

1917 № 13—Ապրիլ 2 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflis, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերի

Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՀԱՅՈՑ ԶԱՏԻԿ

Զատիկը հրէաները սահմանեցին ի յիշատակ իրենց եգիպտացոց գերութիւնից ազատման, որին ինչան ամեն տուն մորթում է մի անարատ գառ. իսկ քրիստոնեաներս տօնում ենք Զատիկը ի յիշատակ Քրիստոսի յարութեան և կարմրաներկ ձուով։

Մեզնից շուրջ երկու հազար տարի առաջ աշխարհ եկաւ սիրոյ ամենամեծ վարդապետը՝ Յիսուս-Քրիստոս, որ թէև գերադասութիւն էր տալիս իւր հայրենիքին, պատուիրելով նախ Իսրայէլի կորած ոչխարները փնտռելու, բայց յարում էր՝ գնացէք քարոզեցէք բոլոր հեթանոսներին, ուրեմն առանձին խտրութիւն չէր դնում ոչ հրէի և ոչ էլ հեթանոսի. նա քարոզում էր ամբողջ մարդկութեան ազատութիւն, հաւասարութիւն և եղբայրութիւն։

Ժամանակին փարիսեցութիւնը և բռնութիւնը նրան հալածեց, տանջեց, չարչարեց և ի խաչ հանեց։

Եթէ հնարաւոր է բռնութեամբ մարմինը մեռցնել, բարեբախտաբար անհնար է միտքը մեռցնել։ Եւ ոչ մի բռնութիւն, որ այնքան հարուստ է հրէշաւոր միջոցներ հնարելու մարմինը մեռցնելու, չէ կարողացել և կարողանալու միտքն ու գաղափարը, որ յաւիտենական է, սպանելու։ Եւ Քրիստոս, սիրոյ ամենամեծ վարդապետը, իբրև մտքի, գաղափարի ազատութեան մարմնացում, յարութիւն առաւ, նահատակութեամբ ի սէր համայն մարդկութեան։

Հայ ժողովուրդը, մարդկութեան այս փոքրիկ բեկորը, որ առաջաւոր Ասիայում դարաւոր կռիւ է մղում բռնութեան դէմ իւր ազատութեան համար, և որը բոլոր ազգերից առաջինն ընդգրկել է սիրոյ մեծ վարդապետութիւնը և փարել աշխարհիս Մեծ Քարոզչի ուսման, դարեր շարունակ ոգորել է բարբարոսութեան դէմ, տանջուել ու չարչարուել է ազատ և քրիստոնեայ ապրելու համար իւր հայրենիքում, ազգովին մի նահատակ ժողովուրդ է և իւր բովանդակ կեանքը նահատակութիւն։ Եւ այսօր, քանեերորդ դարում այդ բազմաչարչար նահատակ ժողովուրդը ի խաչ է հանւում, իբրև ազատութեան տենչացող քրիստոնեայ ժողովուրդ։

Բայց չէ՞ որ բռնութիւնն էլ սահման ունի. հնչում է ահա, ով նահատակ ժողովուրդ, և քո ազատութեան ժամը։ Վերջապէս դու էլ կարող ես այս գարնան հետ, բռնութեան գարթման այս հրաշաւոր տօնին ազատութիւն

և գաղափարի յաղթանակը—Յարութիւնը տօնելու։

Քո հարազատ հարիւր-հազարաւոր զաւակների արիւնով ողողուած ձորերն ու հովիտները ահա կանաչելու են. յոյս տո՛ւր, Աստուած է, որ խափանում է քո թշնամի և թըշնամի-բարեկամների չար խորհուրդները. Նա է որ ոսկերոտիքներից էլ Աբրահամ ու զաւակներ է յարուցանում։

Եղան ազգեր, որ երբեմն հաւասարութիւն և ազատութիւն գոչեցին, բայց քեզ բաժին մնաց ստրկութիւնը։ Այլ է այսօր։ Ահա հիւսիսի արծիւը թևատարած հովանաւորում է և քեզ։ Ռուս մեծ ժողովուրդը փշրելով իւր դարաւոր շղթան, քեզ եղբայրական օգնութեան ձեռք է կարկառում. քո դարաւոր իղձը, ո՛վ բազմաչարչար հայ նահատակ ժողովուրդ, ահա իրագործւում է։ Մօտ է և քո ազատութեան արշալոյսը։ Ազատութեանդ այս Զատիկը ահա այսուհետև դարէդար կը տօնես դու, պատուիրելով զաւակներիդ, այս մեծ աւետիքին ի յիշատակ անարատ գառով և նահատակութեան ու ազատութեան նշանով՝ կարմրաներկ ձուով հանդիպելու։

Ահա քո գարունը, ահա քո Զատիկը։

Ս. Կ.

---

## ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԸ

Մօտ քսան դար առաջ Երուսաղէմում խաչ հանուեց մի հանճարեղ հրէայ։ Համեստ ու համարեա անգրագէտ մի արհեստաւոր. նա մեծացել էր Հրէաստանի մի խուլ անկիւնում, պարզ ու անգէտ լեռնցիների շրջանում և այդտեղից դուրս էր բերել համարձակ մի քարոզ—թէ բոլոր մարդիկ հաւասար են և ազատ։ Եւ նա ճանաչուեց մահապարտ այս քարոզի համար ու խաչուեց։

Հին, ալևոր տենչանքներ էին այդ երկու սկզբունքները մարդկութեան համար—ազատութիւն, հաւասարութիւն։ Դարերի սկզբից մարդը հալածում, ստրկացնում է մարդուն։ Եւ դարերի սկզբից էլ մարդն իր համար գաղափար էր դարձնում—ազատուել իր նման մարդու ձեռքից, ազատուել մարդու բռնութիւնից։

Ծանր էր ստրուկ ժողովրդների դրութիւնը։ Եւ դաժան փորձանքների մէջ էր ծլարւում ազատութեան գաղափարը։ Բայց նա անմեռ գաղափար էր, հարիւրաւոր դարեր էր ապրում, Եւ որքան հաստանում ու կոպտանում էր մարդկութեան շլինքին կապած երկաթէ շղթան, այնքան մեծ ու նուիրական հասկացողութիւն էր դառնում ազատութիւնը։ Մարդիկ նրան պաշտել սկսեցին իբրև ամենամեծ սրբութիւն։

Մարդիկ նրան աստուած դարձրին և երկրպագում էին նրան։

Նազովրեցի Յիսուսից շատ ու շատ դարեր առաջ մարդկութեան մէջ պաշտւում էր աշխարհի համար տանջուող, աշխարհի համար սպանուող մի աստուածութիւն, որ երեք օրից յետոյ յարութիւն էր առնում։ Այսպէս էր, օրինակ, Միհր աստուածը, որ մէկն էր նաև հայոց հին աստուածներից։

Այդ չարչարանքը, այդ թաղումն ու յարութիւնը, որոնց մէջ ձևաւորւում էր ազատութեան գաղափարը, միշտ կապուած էին գարնան հետ, երբ կենդանանում էր բնութիւնը, երբ դաժան ձմեռուայ խորտակումով վերակենդանութեան, անջատ ու անվերջ ապրելու յոյսերով էր լցւում գեղեցիկ աշխարհը...

Եկաւ ժամանակ, երբ խորտակուեց և Միհրը և նրա տեղը բռնեց Նազովրեցի երիտասարդ հիւսնը, որ մեռել էր խաչի վրայ։ Քրիստոնէութիւն կազմուեց, ամենաընդունակ, քաղաքակիրթ ազգերի կրօնը, որի ամենամեծ տօնը դարձաւ մարդկութեան համար չարչարուած, թաղուած ու երեք օրուայ մէջ յարութիւն առած հին ազատական գաղափարը՝ Յիսուսի մէջ մարմնացած։

Եւ ամեն տարի, գարնան, ցնծութիւններով, վարդագոյն յոյսերով տօնելով այդ աննման տօնը, ազատութեան հին երկրպագու մարդը նայում էր իր չորս կողմը, հին իրականութիւնը—ստրուկ մարդկութիւնը և հարցնում էր իրեն՝ Երբ, վերջապէս Երբ պիտի չարչարուող, սպանուող, բայց յաւէտ յարութիւն առնող ազատութեան գաղափարը իրականանայ, շօշափելի մարմին ստանայ։

Եւ ահա 1917 թուականը իր Զատիկով մի անօրինակ երևոյթ է դառնում։ Իր հետ նա բերում է ազատագրուած մի վիթխարի աշխարհ, որ բովանդակում է իր մէջ 170 միլիոն մարդը։

Ռուսաստանն է դա։ Ռուսաստանը, որ դեռ երէկ համարւում էր մէկը, եթէ ոչ ամենավատը բռնութեան ճիրաններում անբախտացած երկրներից։ Այսօր ազատ է նա և նրա հետ եղբայրաբար համբուրւում են աշխարհիս ամենաազատ ազգերը։ Երէկ նա, իբրև ստրուկ, արգահատանքի և խղճահարութեան առարկայ էր բոլոր ազգերի համար։ Այսօր նրան նախանձում են։ Այսօր նա կենդանաբար ոյժեր է ծաւալում մի հրաշագոյն բախտ ստեղծելու համար։

Հարիւրաւոր սև Զատիկներ են անցկացրել այս մեծ ազգի մեծ զաւակները բանտի, աքսորի, տաժանակիր աշխատանքների մէջ, աչքերը յառած արևածագին թէ Երբ կերևայ ցանկացած օրուայ առաջին նշոյլը։

Այժմ ահա բացուած է կարմիր, ջերմ ու կենդանար առաւօտը, և նրա գարնանաբեր շողերի տարափի տակ իրար են սեղմւում, եղբայրաբար իրար հետ խօսք են խօսում այդ մեծ աշխարհի բազմաթիւ ազգերը։ Այլ ևս փոխադարձ անվստահութիւնը, չարակամութիւնը չէ դժբախտացնում այդ ազգութիւնները։ Զգացին բոլոր սրտերը որ աշխարհը լայն է ու մեծ, որ ամենքի համար տեղ կը լինի արևի տակ և ամեն մէկը կապրի իր երջանկութեան համար և թոյլ կը տայ որ ամեն մէկն ապրէ իր համար և ընդհանուր մեծ հայրենիքի համար։

Փա՜ռք յարութիւն առած յաւիտենական գաղափարին, որ տիեզերքին պարգևում է այսպիսի մի կարմիր գարուն...

* * *

Պարզ ու կապուտակ երկնքի ծոցից թափուող այս առատ ծիրանագոյն լոյսերի տակ կանգնած է և հայաստանցին։ Ու նայում է բիւրաւոր անանուն գերեզմաններից, անապատների աւազների միջից, ցրուած ամեն տեղ, բոլոր հողմերի կամքին թողնուած, մատնուած այն բոլոր վշտերին ու տանջանքներին, որ ընդունակ է ստեղծել մարդկային աշխարհը։

Ազատութեան բոցավառ արշալոյսին է ակնդէտ նայում կեղեքուած, անպատուած հայ մայրը իր գերութեան անանուն որջերից։ Նայում են դաշտերի երեսին թափառող բիւրաւոր որբիկները, մենակ թափառող, աչքը արցունքով լցուած գաղթականը։ Նայում են և՛ մեծ, և՛ փոքր, նայում են բոլոր հասակները։ Ի՞նչ է ասում իրանց սև ու մութ երկնակամարը։

Եւ լսում են։ Դեռ մեծ Պէշիկթաշլեանն է, որ մրմնջում է տխուր նոճիների տակ պատսպարուած իր գերեզմանից.

Գոց են ամպով աստղունք... և յոյս
Դեռ շատ հեռու է Արշալոյս...

Բայց ոչ, հա՜յ ախպար։ Տե՛ս, քեզ էլ մօտենում է անուշաբոյր առաւօտը և ահա իր ժպիտներն է դրօշմում նահատակ ճակատիդ։ Գալիս է ժամը, տենչացած, ոսկի ժամը։ Թօթափիր քեզանից տանջանք, յուսահատութիւն։

Եւ դու, Մեհիկ, կուլա՜ս անյոյս։
Ո՛հ, ոչ, գընա... գայ Արշալոյս։

Գալիս է արշալոյսը, Վաղը նա քրքումով ու բոսրով կը հրդեհէ հայաստանցու սև երկնակամարը…

Օրհնեալ է գերեզմանից յարութիւն առնող ազատութիւնը։

---

## ՅԱՐՈՒԹԻՒՆ

Տնից ու տեղից փրթած, հալածական հայ ժողովուրդն երրորդ անգամն է, որ օտար հորիզոնի տակ դիմաւորում է Յարութեան։

Երկու անգամ Զատիկը նրա համար բերեց արիւն ու արցունք, խաղաղ աշխատանքի և ստեղծագործ կեանքի մի ահաւոր անկում։

Հայրենի օջախին կարօտը քաշող, նրա ծուխին ու մուխին տենչանքով այրուող տաճկահայը, որ այսօր հողմահալած թափառում է աշխարհից աշխարհ, աստանդական ու վշտաթաթախ, սպասում էր նոր կեանքի և լուսաւոր հորիզոնի։

Ու այս երրորդ Յարութիւնն ահա եկաւ ազատութեան լոյսերով։

Եկաւ ոչ միայն հիմնովին շրջելու հին, բռնակալ կարգերն, այլ և ոգևորելու փախստական հայութեան լքուած հոգին։

Հին բռնակալութիւնը միայն բնիկների համար մի ծանր ու տոսկալի մղձաւանջ չէր, միայն Ռուսաստանի ժողովուրդները չէին, որ ճնշւում ու հիւծւում էին նրանից։ Այդ անտանելի կարգերի ցասումն ևս առաւել ուղղուած էր փախստական հայու դէմ, ուղղուած էր նրա արիւնաներկ հայրենիքի, նրա վառ յոյսերի և արդար ակնկալութիւնների դէմ։

Հին իշխանութիւնն իր պարտականութիւնները մոռցաւ տանջուած հայութեան հանդէպ, անտես առաւ նրա անթիւ զոհերն ու ծառայութիւնները, ոչ միայն չաշխատեց քիչ թէ շատ բարուոքել նրա ծանր վիճակն ու դարմանել անհամար խոցերը, այլ փայփայեց մեր դարաւոր թշնամին և դիւային ծրագիրներ կազմեց մեր երկրի ապագայի համար…

Այժմ բարեբաղդաբար տապալուեց այդ ոճրաղաւ ռեժիմը։

Այժմ Ռուսաստանի բոլոր ժողովուրդները շնչում են լիաթոք ազատութեան կենարար օդը։

Իսկ տանջուած փախստականի համար, այդ ազատութիւնը կրկնակի արժէք ունի, աւելի թանկագին է ու բաղձալի։

Ահա թէ ինչու նա եռանդով ու ոգևորութեամբ դիմաւորում է ազատութեան և այս անգամ հանգիստ հոգով տօնելու է Քրիստոսի Յարութիւնը։

Նա դիմաւորում է գրկաբաց ու խանդավառ, որովհետև ամենից աւելի կարիք ունի Յարութեան։

Նրա տանջուած հոգին, բզկտուած ու խոշտանգուած մարմինը ձգտում են յառնելու, կեանքի ստեղծագործ ու շինարար բնազդներով թրթռալու։

Եւ Յարութեան տենչանքը ոչ միայն օտար հորիզոնների տակ՝ բնաւոր թռչունների պէս ծուարած հայութեան սրտումն է որ կը վառուի, այլ և անդին, մի քանի քայլ հեռու, անտէր ու ամայի մնացած երկրին մէջ։

Հայրենի աւերակ ու կրնկակոխ երկիրն տենչում է նոր կեանքի ու լոյսի, տենչում է անձկանօք հոգեպէս ու ֆիզիքապէս յառնած զաւակների վերադարձին։

Օ՜, հայ տուէք, կեանք ու ոգի տուէք հալածական ժողովրդին, ազատութեան ու արդարութեան թևերն տարածեցէք մեր հայրենի հողին վրայ…

Հայութիւնն Յառնում է ահա…

Թորգոմ

---

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Վերջին շաբաթուայ ընթացքում ռուսաց արևմտեան ճակատի վրայ գերմանացիները մեծ ոյժ հաւաքելով սկսեցին յարձակուել. Գլականից արևելք (Ռիգայից 20 վերստ հարաւ) թշնամին գրաւեց ռուսական խրամատների մի մասը, բայց հակայարձակումով յետ մղուեց։

Բեռլինից պաշտօնապէս հաղորդւում է, որ Ստոխոդի վրայ, Տոբոլի մօտ, նախակամրջային ամրութիւնը գրաւելիս ռուսներից գերուած են 150 սպայ, 9,500 զինուոր, 15 թնդանօթ և 150 գնդացիր։

Կովկասեան ճակատում՝ Խանիկինի գրաւումից յետոյ, Վեկկէի շրջանում կռիւ է։ Կըզըլ-Ռաբատի մօտ ռուս զօրքերը մարտի 27-ին միացան անգլիացիներին։

Ֆրանս-գերմանական ճակատում ֆրանսիացիք յամառ կռուով յառաջանում են. Սոմմի և Ուազի միջև ֆրանսական հետախոյզ խմբերը առաջացան Գոշից և Մուայից հիւսիս։

Անգլիացիները գրաւեցին Ռանսուան և Բասբոզոն և ուրիշ բազմաթիւ գիւղեր, ձեռք բերելով գերիներ և ռազմամթերք։ Առասի և Սէն-Քենտէնի միջև գերմանացիք մեծ կորուստներ են կրել։

Մարտի 24-ին Վաշինգտոնից հաղորդում են, որ ներկայացուցչական պալատը պաշտօնապէս ընդունեց Գերմանիոյ դէմ պատերազմի յայտարարութիւնը։

Մարտի 25-ին Վիլսոնը մի կոչով յայտարարում է, որ Միացեալ-Նահանգների և Գերմանիոյ միջև պատերազմն սկսուած է և իւրաքանչիւր քաղաքացի պէտք է կատարէ իր պարտքը, համաշխարհային խաղաղութիւնը ձեռք բերելու համար։

---

## Ներքին տեսութիւն

---

## ՀԵՌԱԳԻՐ

Ատրպատականի թեմի առաջնորդ տէր Ներսէս եպիսկոպոսը հեռագրում է խմբագրութեանս.

«Թեմական համագումարը կազմակերպեց Թաւրիզում մի յանձնաժողով Մուսուլի շրջանի հայ փախստականներին օգնելու համար։ Խնդրում եմ բոլոր կազմակերպութիւններին օգնութիւն հասցնել, փողերն ուղարկելով թեմական վարչութեան»։

---

### † ՎԱՍԻԼ ԱՒԱԳԵԱՆ ԴԱՒԹԵԱՆԸ ԵՒ ԻՒՐ ԿՏԱԿԸ

Նորոգ հանգուցեալ Վասիլ Աւագեան Դաւթեանը, որ վախճանուեց 62 տարեկան հասակում, թողել է Կ. Հ. Բ. Ըն.-ութեան մի խոշոր կտակ։ Դաւթեանի հայրը եղել է Ղազախի գաւառի Սևի գիւղից։ Նա փոքրուց 19-դ դարի սկզբներում տեղափոխւում է Թիֆլիս և, ծառայելով վաճառականի մօտ, վերջը ինքն էլ առանձին վաճառականութեամբ զբաղւում, որով և ձեռք է բերում բաւական մեծ կարողութիւն։ Աւագ Դաւթեանի մահից յետոյ, նրա գործերը շարունակում են որդիկը՝ Եգոր և Վասիլը։

Դաւթեանները ունէին մահուդի վաճառատուն, որը եղել է «Ծածկած բազազխանում», իսկ յետոյ Նախկին Արծրունու քարվանսարայում, Դվորցովայա փողոցում։ Եգոր Դաւթեանը վախճա-

նուեց 1906 թ. և թողեց կտակ, որով իր մօտ մէկ միլիոն կարողութիւնը կարգադրել էր բաժանել չորս մասի՝ մէկը եղբօրը, Վասիլին, երկու բաժինը երկու քոյրերին, որոնցից մէկը՝ Մարիամ Դաւթեանը նրա մահից յետոյ ամուսնացաւ գնդապետ, Ամենայն Հայոց Կաթողիկոսի եղբայր Ալէքսանդր Սուրէնեանցի հետ, իսկ մէկ չորրորդ մասը յանձնեց՝ բարեգործական նպատակով ըստ հայեցողութեան ժառանգների։ Ժառանգները որոշեցին յատկացնել գիւղատնտեսական դպրոցի ի յիշատակ հանգուցեալ Եգոր Դաւթեանի։

Այդ դպրոցի կառուցումն ժառանգները որոշեցին բանալ հանգուցեալի հայրենիքում, Ղազախի գաւառում, բայց երբ պարզուեց, որ յարմար հողաբաժին չկայ, ժառանգները դիմեցին Էջմիածնի Սինոդին և առաջարկեցին ընդունել կտակած գումարը և բաց անել Ճեմարանին կից գիւղատնտեսական բաժանմունք։

Սինոդը իր համաձայնութիւնը հանդերձ շնորհակալութեամբ յայտնեց ժառանգներից տիկ. Սուրէնեանին և օր. Բալիա Դաւթեանին, իսկ Վասիլ Դաւթեանը այդ ժամանակները ապրում էր արտասահման։ Սինոդի որոշումն մինչև այսօր մնացել է անկատար կտակած գումարը չստանալու պատճառաւ։ Հանգուցեալ Վասիլ Աւագեան Դաւթեանը ցանկանալով իր միջոցներով և եղբօրից ստացած իր բաժնով ծառայութիւն մատուցանել իր ազգին և գլխաւորապէս հայ գիւղացութեան, թողել է նոտարական կարգով կազմած մի կտակ, որի բովանդակութիւնը հետևեալն է.

Հանգուցեալ Վ. Դաւթեանի կարողութիւնը մօտաւորապէս հասնում է 300,000 ռուբլու, կանխիկ գումար, արժեթղթեր, մի շարք անշարժ կալուածքներ Թիֆլիսում, Գորի քաղաքում և գաւառում, Սղնախ քաղաքում և գաւառում, Ղազախի գաւառում և մի քանի նաւթաբեր հողեր Բագուի գաւառում։ Կալուածքներից մասն ունեն քոյրերը և տակաւին բաժանուած չէ, բացի մի կտոր հողից Թիֆլիսում։

Քաղուածք կտակից Վասիլ Աւագովիչ Դաւթեանի.

1) Իմ բոլոր շարժական և անշարժ գոյքը, ինչ որ լինի և ուր էլ որ գտնուի, ինչպէս տուն, հող, տան կայք, դրամագլուխ, տոկոսաբեր թղթեր, պահանջաթղթեր, հաշիւներ, մի խօսքով ամեն ինչ—կտակում եմ ի սեփականութիւն Կ. Հ. Բ. Ընկերութեան։

2) Իմ կտակակատարները երկու տարուան ընթացքում պարտաւոր են բոլոր իմ գոյքը վերածել կանխիկ դրամի կամ տոկոսաբեր թղթերի, միացնելով հետը ունեցածս կանխիկ դրամը և տոկոսաբեր թղթերը։

3) Բոլոր գոյքս դրամի վերածելուց յետոյ կտակակատարներիս պարտաւորեցնում եմ հատուցանել ա) իմ քոյր Մ. Սուրէնեանին մէկ տասներորդական մասը, բ) Ա. և Լ. Հեջուբեանին մէկ քսաներորդական մասը և գ) Գայիանեան դպրոցին մէկ տասներորդական մասը, այն պայմանով, որպէսզի այդ գումարով կազմուի անձեռնմխելի հիմնադրամ (ֆոնդ) ի յիշատակ իմ մօր՝ Եկատերինէի և տոկոսիքով նշանակուեն թոշակ Ղազախի վիճակից ամենաչքաւոր աշակերտուհիներին։

4) Վերոյիշեալ վճարները տալուց յետոյ մնացորդ գումարը պէտք է պահէ Կ. Հ. Բ. Ընկ. մի որևէ բանկային հիմնարկութեան մէջ անձեռնմխելի և տոկոսիքը գործադրէ հետևեալ կերպիւ. ա) մէկ քսաներորդ մասի տոկոսիքով պահել մի թոշակառու ուսանող բացառապէս ղազախեցիներից Թիֆլիսի բազմարուեստական դպրոցում (պոլիտեխնիկական ինստիտուտում), իսկ եթէ այդ չբացուի՝ ուրիշ բարձրագ. դպրոցներում Կովկասի կամ այլուր՝ Բ) Մէկ տասներորդ մասի տոկոսիքով բանալ Ղազախի Սոփ գիւղում հայոց դպրոց յանուն իմ հօր՝ Աւագի։ Գ) Մէկ քսաներորդ մասի տոկոսիքը տալ իմ ազգականներին, իսկ եթէ չեն գտնուի այդպիսիները՝ գործադրել հետևեալ կերպիւ, ինչպէս ցոյց է տրուած սորև։

5) Մնացած գումարի տոկոսներով Կ. Հ. Բ. Ըն.-ութիւնը բաց է անում և պահպանում է իմ և եղբայրներիս անունով մէկ գիւղատնտես. ընկ. և մի քանի հայ արական և ծխ. դպրոցներ, հիւանդանոց, որբանոց կամ ինչ կը ցանկանայ Ընկերութիւնը։

6) Կ. Հ. Բ. Ըն.-թիւնը կարող է 5-րդ կէտում նշանակուած հիմնարկութիւնների համար ձեռք բերել սեփական շէնք։

7) Թէև ես որոշել եմ բոլոր իմ գոյքը վերածել կանխիկ դրամի, սակայն Կ. Հ. Բ. Ըն.-թեան Խորհուրդը կարող է այս կամ այն կալուածքը թողնել իր վրայ և նոյն իսկ անձեռնմխելի գումարով գնել նոր կալուածք։

8) Կ. Հ. Բ. Ըն.-թեան Խորհուրդը պարտաւոր է կատարել տալ հոգեհանգիստ իմ և ծնողներիս համար։

9) Կ. Հ. Բ. Ըն.-թիւնը պարտաւոր է ամեն տարի մամուլի միջոցով և Ամենայն Հայոց Վեհափառ Կաթող. հաշիւ ներկայացնել իմ նուիրաբերութեան և տոկոսների գործադրութեան մասին։

10) Կ. Հ. Բ. Ըն.-թեան փակումից յետոյ բոլոր իմ կտակածները անցնում են Էջմիածնի վանքին նոյն նպատակներով գործադրելու։

11) Կտակակատարներ նշանակւում են—Մեսրոպ եպիսկոպոսը, Ս. Ս. Յարութիւնեանը և Իվ. Ս. Սպենդիարեանը և Կ. Հ. Բ. Ըն.-թեան Նախագահը։

12) Մնացած բոլոր կտակներս, որոնք գրուած են սրանից առաջ, համարւում են ոչնչացած։

## ԳԻՒՂԱԿԱՆ ՏԱՐՐԻ ԴԵՐԸ

I

Վերջերս մեզանում մի առանձին ուշադրութիւն է գրաւում գիւղական տարրի ներկայ դրութիւնը։ Այդ հարցում մեծ դեր խաղաց պ. Գ. Մուրադեանը, որը աւելի ծանօթ է մեր գիւղացոց կեանքին և նրանց պայմաններին։ Գրեցին շատերը այդ տարրի մասին, աւելի ևս լուսաբանելով հարցը։

Եւ արդարև մեր բարերարները և բարեգործական և կուլտուրական ընկերութիւնները աւելի զբաղւում են քաղաքաբնակների կեանքով, բանալով դպրոցներ և այլ կուլտուրական հիմնարկութիւններ. բայց գիւղական տարրի համար այդ հոգացողութիւնը այնքան մեծ չի լինում. ճշմարիտ է բացւում են դըպրոցներ, զանազան տեղերում բարեգործական ընկերութեան ճիւղեր, որոնց արդիւնքը անշուշտ զգալի է։ Մեր գիւղացոց պահանջը ամենուրեք գլխաւորապէս նիւթական ապահովութեան հարց է, որի մասին հոգացողութիւն չի եղել։ Նա ամեն տեղ տուժում է հողի ու ջրի պակասութիւնից և այդ է գլխաւոր պատճառը, որ նա գաղթում է իւր երկրից հեռու, մանաւանդ Անդրկասպեան երկրները, մեծ քաղաքները և անգամ Ամերիկա։

Եւ դժբախտաբար այդ գաղթը դառնում է ոչ թէ ժամանակաւոր, այլ մշտնջենաւոր, կազմելով ցրուած գաղութներ, որոնք ազգաբնակութիւնը ընդմիշտ ձուլում է զօրեղ տարրերի հետ, կորցնելով իր լեզուն և այլն.

Բայց այդ գաղթականութեան հոսանքը գիւղական տարրին՝ բացի վերոյիշեալ հանգամանքից նպաստում է ազգի այլասերման և ֆիզիքական քայքայման, որի վրայ մեծ ուշադրութիւն է դարձուած աւելի կուլտուրական երկրներում։ Որքան գիւղական տարրի քանակը պակսի, նոյնքան պիտի նուազի ազգի կենսունակութիւնը, ֆիզիքական առողջութիւնը, արիութիւնը և նամանաւանդ նրա աճման տոկոսը։

Յայտնի է, որ այժմ ամեն տեղ ազգութիւնների աճումը

համարեա դադարել է քաղաքներում զանազան պատճառների շնորհիւ. վերջինը լինում է գլխաւորապէս գիւղերում, ուր անզաւակ մարդիկ կազմում են ամենաչնչին բացառութիւն։ Ապա ուրեմն գիւղական տարրը ամեն ազգի գոյութեան, աճման և հակայլասերման տեսակէտից առաջնակարգ դերն է խաղում։ Որպէսզի մեր այդ եզրակացութիւնը անապացոյց չլինի, տեսնենք անգլիացոց և ֆրանսիացոց այդ ամենակուլտուրական ազգերի նոյն հարցի վերաբերեալ ուսումնասիրութիւնները։

II

Եթէ համեմատենք գիւղական տարրը ազգաբնակութեան միւս դասակարգերի հետ, կը տեսնենք, որ վերջինները ֆիզիքական կազմուածքի կողմից աստիճանաբար այլասերւում են, ենթարկուելով քաղաքային կեանքի վտանգաւոր կացութեան։ Դժբախտաբար՝ դժուար է գիւղական տարրը հեռու պահել այդ վտանգից՝ շնորհիւ նրա մեծ հոսանքին դէպի քաղաքները։ Բարոն Ղէյկինգը իւր մի նշանաւոր աշխատութեան մէջ *) «Անգլիայի ապագան» գլխում գրում է՝ ազգաբնակութիւնը ֆիզիքապէս ընկնում է և ընդսմին նրա ռազմական ընդունակութիւնը, շնորհիւ նրա մեծամասնութեան, որը՝ թողնելով գիւղական կեանքը՝ խառնւում է զանազան քաղաքներում և անթիւ գործարաններում։ Գիւղացւոց հոսանքը դէպի քաղաքները տարէց-տարի մեծանում է։ Վերջին ազգագրութիւնից երեւում է, որ 77 տոկոսից ոչ պակաս բնակւում է քաղաքում, իսկ 50 տարի առաջ այդ տոկոսը հասնում էր 50 տոկոսի։ Երբ գիւղատնտեսական աշխատանքի պահանջը սկսեց պակասել, գիւղական տարրի երիտասարդութիւնը ձգտեց դէպի քաղաքների գործարանները՝ այն յոյսով, որ աւելի մեծ աշխատավարձ կունենար։ Բայց հետեւանքն այն եղաւ, որ այդ տարրը ենթարկուեց քաղաքի հակառողջապահական պայմաններին, լրացնելով անգործ, սոված քաղաքային «պրոլետարիատի», շարքը. որովհետև նա սովոր էր քաղաքային զեխ կեանքին։

Անգլիական կառավարութեան կարգադրութեամբ 1904 թուին կազմուել է մի յանձնաժողով քննելու անգլիական ազգաբնակութեան ֆիզիքական դրութիւնը։ Քննութիւնը ցոյց տուեց, որ քաղաքային կեանքը գլխաւոր գործօնն է ազգաբնակութեան քայքայման, շնորհիւ անբաւարար սննդի, գինեմոլութեան, զանազան հիւանդութիւնների և այլն, որոնցով բացատրւում է ի միջի այլոց՝ խելագարութեան աճումը։

Բժ. Դժոնսը (Джонсъ) գրում է, որ գործարաններում բնակուողները աւելի մեծ տոկոս են տալիս խելագարութեան, համեմատած գիւղական ազգաբնակութեան հետ։

Այդ բացատրւում է՝ ըստ յիշեալ բժշկի, քաղաքային կեանքի քայքայիչ անյաջող, հակառողջապահական պայմաններով, որոնք առաջացնում են ֆիզիքական այլասերում։

Զինուորագրութիւնը ցոյց է տալիս հետեւեալը՝ 1900 թուին անպէտքների (бракуем.) տոկոսը հասնում էր 27, 4. 1901՝ 29, 4 1902՝ 32, 22. 1903՝ 32, 83. 1904՝ 34,39։

Ֆիզիքական պայմանները դպրոցական երեխաների բժշկական քննութիւնը տուել է սարսափելի հետեւանքներ. շատ դպրոցների աշակերտութիւնը կիսաքաղցած է, չունի տաք հագուստ. 76, 7 տոկոս ապրում են այնպիսի ընտանիքներում, որոնք ապրում են մէկ կամ երկու փոքրիկ սենեակներում։ Էդինբուրգի 600 աշակերտներից՝ 54 տոկոսը տառապում էր աչքի թուլութիւնից, 42 տոկոսը ականջի, 70 տոկոսը զանազան հիւանդութիւններից։ Արքունական յանձնաժողովը գտնում էր, որ այդ քննութեան հետեւանքը տիպիկ կարելի է համարել մեծ քաղաքների դպրոցական աշակերտութեան ֆիզիքական գոյութեան։

*) Англія, ея государст., обществен. и экономич. строй, Б. Гейкингъ—русскій консулъ въ Англіи. 1909 г.

Գ. Ղէյկինգի եզրակացութիւնը այդ այլասերման առթիւ այն է, քանի որ գիւղական ազգաբնակութիւնը դիմում է քաղաքները, թողնելով աւելի առողջարար գիւղատնտեսական իր աշխատանքը, շնորհիւ դրամատիրութեան և գործարանական կեանքի, Անգլիան տառապում է այն կուլտուրական գերկուլտուրականութիւնից (культурное переразвитіе), որին զոհ գնացին նախընթաց համաշխարհային պետութիւնները՝ Հռովմը, Յունաստանը, Փիւնիկէն և այլն։

Շնորհիւ գիւղացութեան յետամնացութեան Անգլիան պատերազմի ժամանակ կարող է ենթարկուել սովի, որովհետև տարուայ հացահատիկի, ալիւրի և մսի 80 տոկոսը ստացւում է ուրիշ երկիրներից։ Այդ չարիքի դէմ Անգլիայի նշանաւոր գրողները առաջարկում են գիւղական տարրի հոսանքը դարձնել դէպի լայնածաւալ գաղութները, ուր գիւղատնտեսութեանը լայն ասպարէզ է բացւում։ Եթէ անգլիացին չնայած իր մարմնամարզական սովորութիւնների՝ ենթարկւում է վերոյիշեալ պատճառներով ֆիզիքական այլասերման, միւս ազգութիւնները աւելի ևս ենթակայ են նոյն աղէտին։

Բժշ. Բ. Աղասարեան

(Շարունակութիւնը հետեւեալում)

---

## ԱՇԽԱՏԱՆՔ ՏՈՒԷՔ

Գաղթականութիւնը, ընդհանուր առումով, արգահատելի վիճակի մէջ է գտնւում ամենուրեք—թէ Կովկասում, թէ Պարսկահայքում և թէ, այսպէս կոչուած, Նորանուաճ վայրերում։ Գոնէ մամուլում շարունակ երեւցող փաստերն ու տեղեկութիւնները այդ են ասում։ Եւ դա շատ էլ հասկանալի է։

Եթէ պատերազմի հետեւանքով ստեղծուած թանգութիւնից և կեանքի դժնդակ պայմաններից նեղւում, տնքում են չաւերուած, գաղթի ու գաղթականութեան հարուածներին չենթարկուած ժողովուրդները, ապա ուրեմն պարզ է, թէ ինչ սոսկալի վիճակ պիտի ապրեն նրանք, որ ամեն ինչ թողած գիշակեր յափշտակիչներին, գաղթի անիծեալ ճամբան բռնեցին—մերկ, անօթի ու աղքատ։

Սակայն չափազանց ծանր է դրութիւննին մանաւանդ այն գաղթականների, որ ապրում են Կովկասից դուրս, այն է՝ Պարսկահայքում և Տաճկաստանի նուաճուած վայրերում։ Փակագծերի մէջ նկատենք, որ Պարսկահայք ասելով, մենք այստեղ ի նկատի ունենք գլխաւորապէս Սալմաստի և Խոյի գաւառները, ուր ապրում է գաղթականութեան խոշոր մեծամասնութիւնը։ Այստեղ կեանքի ընդհանուր ծանրութիւնների վրա, աւելանում է մի կարեւոր հանգամանք ևս, որ տեղական մասնաւոր բնոյթ ունի։ Այդ շրջապատի աւերածութիւնը, ամայութիւնն է։

Շէն և հարուստ միջավայրում—թէկուզ կեանքի մաքսիմալ թանգութեան ժամին—ապրելն ու գլուխ պահելը շատ աւելի հեշտ է, քան մի աւերուած, քարուքանդ եղած միջավայրում։ Այնտեղ թանգութեան հետ միասին կան նաև այդ թանգութիւնը մեղմելու, դէմը կռուելու միջոցները։ Կան ապրուստի համար հարկաւոր նիւթերն ու յարմարութիւնները, կան դիւրութիւններ, կայ կեանք, շարժում, յառաջադիմութիւն։ Վերջապէս, կայ այդ ամենի հնարաւորութիւնը պայմանաւորող ամենակարեւոր զէնքը՝ աշխատանքը—այդ բառի և՛ բարոյական, և՛ նիւթական իմաստով—որը գործ ածել գիտցողին կարիքն ու թանգութիւնը ընկճել չեն կարող։

Իսկ ներկայ թանգութեանը ինչպէս իր գլուխը պահի՝ աւերուած, տակն ու վրայ եղած Պարսկահայքում և Նորանուաճ

գաւառներում ապրող խեղճ ժողովուրդը, այն էլ գաղթական, բազմիցս թալանուած, իր կարողութիւնը կողոպտիչներին թողած ժողովուրդը։ Նրա կացութիւնը անտանելութեան չափ ծանր է. նրան շրջապատող պայմանները՝ մէկը միւսից դաժան, խեղդող։ Թանգութիւնը մի կողմից, մթերքների, յարմարութիւնների և կենսական նիւթերի սղութիւնը երկրորդ կողմից, աշխատանքի կատարեալ բացակայութիւնը երրորդ կողմից միանալով և ձեռք-ձեռքի տալով, ստեղծել են գաղթականութեան — մանաւանդ աւերուած միջավայրում ապրող գաղթականութեան համար — գոյութեան այնպիսի պայմաններ, որոնց մէջ գլուխ պահելն արդէն մարտիրոսութեան է հաւասար։

Թէ այստեղ և թէ այնտեղ երկիրը տակն ու վրայ է եղած, աւերուած մինչև անկարելութիւն։ Երկու տեղերում էլ ժողովուրդը կողոպտուած է մինչև իր յետին շապիկը։ Կեանք չկայ, շարժում չկայ, յառաջադիմութիւն չկայ։ Եւ որ գլխաւորն է՝ աշխատանք չկայ, աշխատանք՝ աւելի լայն, հասարակական իմաստով, որով մարդիկ կարողանային կարիքների դէմ պայքարել։ Եղած աշխատանքի շրջանակն էլ չափազանց նեղ է և միայն շատ քչերին՝ զօրեղներին ու բախտաւորներին՝ մատչելի։ Իսկ ժողովրդի խոշորագոյն մեծամասնութիւնը զուրկ է աշխատանք ունենալու հնարաւորութիւնից, որովհետև բախտաւորներից իւրաքանչիւրի աշխատանքը իրեն հազիւ է բաւականացնում։

Չնայած որ գաղթականութիւնը Պարսկահայքում և նորանուաճ վայրերում կլանուած է առաւելապէս բուսական կեանքի հոգսերով — հոգեկան կեանքի մասին խօսք էլ լինել չի կարող, քանի որ պայմանները այդ չեն թոյլատրում — չնայած որ իր բոլոր ուժերը մինչև կարելութիւն նա լարում է սոսկ անձնապաշտպանութեան համար, բայց այնուամենայնիւ դարձեալ ազատուել չի կարողանում կարիքի, քաղցի ու մերկութեան ճանկերից։

Շատերն այդ երևոյթը բացատրում են, նախ՝ թէ կեանքի թանգութիւնը հրէշային չափերի է հասել, և երկրորդ՝ որ գաղթականութիւնը ճողոպրել է իր հայրենիքից մերկ, ընչազուրկ։ Անշուշտ, այդ երկու հանգամանքը իրենց ազդեցութեան խոշոր բաժինն ունեն և կարող են ծառայել իբրև պատճառ գաղթականութեան ծանր կացութեան։ Սակայն մեր կարծիքով, այդ չեն միայն։ Կայ հզօրագոյն մի պարագայ ևս, որ միշտ էլ աչքաթող է արւում։ Այդ աշխատանքի բացակայութեան կամ աւելի ճիշտ՝ չգոյութեան խնդիրն է։

Գաղթականութիւնը աշխատանք չունի, ապրելու միջոցներ ձեռք բերելու հնարաւորութիւն չունի։ Եթէ նա կարողանար աշխատել և աշխատանք գտնել, մենք համոզուած ենք, որ երբէք այսպիսի խղճալի դրութեան չէր հասնի, — թէկուզ իր հայրենիքից մերկ ճողոպրած, թէկուզ կեանքի թանգութիւնը օր աւուր սաստկանար։

Եւ մի՞թէ կարող էր գաղթականութիւնը այլ վիճակ ունենալ, երբ նրա խոշոր մեծամասնութիւնը ապրում է միայն պետական նպաստով և եկամտի այլ աղբիւրներ չունի։ Սակայն ի՞նչ է այդ պետական նպաստը կեանքի անօրինակ թանգութեան հետ համեմատած — մի՛ չնչին բան, որի բացասական հետևանքները շատ աւելի են, քան դրականները։

Բայց մի րոպէ ենթադրենք թէ այդ բացասական որևէ հետևանք չունի ու տեսնենք, արդեօք այդ բաւարա՞ր է նպաստառուի գէթ ամենանուազագոյն պէտքերը հոգալու։

Այդ ապացուցելու համար դիմում ենք թուերի լեզուին և օրինակը վերցնում Պարսկահայքում ապաստանած գաղթականութեան կեանքից։

Իրազեկ

(Շարունակութիւնը հետևեալով)

# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԳՈՐԾԱԴԻՐ ԿՈՄԻՏԷՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Մարտի 20—22-ին Թիֆլիսում տեղի ունեցաւ Անդրկովկասի բոլոր գործադիր մարմինների համագումարը, ուր ներկայ էին մի քանի հարիւր ներկայացուցիչներ։ Համագումարում զեկուցում տուին Ա. Խատիսեան, Շահխաթունեան, Ջափարիձէ, Ժորդանիա և ուրիշները։

Համագումարը, որին ներկայ էին Կովկասի կոմիսարները, հետևեալ որոշումները կայացրեց գործադիր մարմինների մասին.

1) Անդրկովկասի բոլոր կազմակերպուած և գործող գործ. կոմիտէները թողնել այնպէս, ինչպէս կան, մինչև կազմումը տեղական գործադիր կոմիտէների՝ ընտրուած ընդհանուր, հաւասար, ուղղակի և գաղտնի ձայնատուութեամբ, առանց սեռի խտրութեան։

2) Յանձնարարել գոյութիւն ունեցող գործ. կոմիտէներին՝ ձեռնարկել կազմելու տեղական կոմիտէներ՝ գիւղական, շրջանային, գաւառական և նահանգական, ընդհանուր, հաւասար, ուղղակի և գաղտնի ձայնատուութեամբ, առանց սեռի խտրութեան, ըստ որում ազգաբնակութեանը թողնւում է՝ որոշելու շրջանային կոմիտէների սահմանները գոյութիւն ունեցող վարչական սահմաններից դուրս (գաւառների սահմաններում)։

3) Քաղ. գործ. կոմիտէները նահանգական քաղաքներում, բացառութեամբ Դաղստանի շրջանի, վերակազմել, եթէ կազմուած չեն Թիֆլիսի քաղ. գործ. Կոմիտէի տիպով, իսկ այն նահանգական քաղաքներում, ուր գործ. կոմիտէները դեռ կազմուած չեն, կազմել այդպիսիք Թիֆլիսի քաղ. գործ. կոմիտէի տիպով։

4) Իշխանութեան ներկայացուցիչներին տեղերում յետագայում անուանել կոմիսարներ (գիւղական, շրջանային, գաւառական և նահանգական)։

5) Նահանգական գործ. կոմիտէներին իրաւունք վերապահել ղեկավարելու տեղական բոլոր գործադիր կոմիտէտներին, դրանց թւում և նահանգական ու գաւառական քաղաքների գործ. կոմիտէներին։ Գաւառական քաղաքների կոմիտէները ենթարկւում են գաւառական կոմիտէներին (Փոթի քաղաքը, իբրև, գաւառ չունեցող, նաւահանգիստ, ենթարկւում է միայն նահանգական կոմիտէին)։

6) Թիֆլիսի և Բագուի քաղ. գործ. կոմիտէներին թողնել անկախ գործողներ և նրանից յետոյ, երբ կը կազմուեն Թիֆլիսի և Բագուի նահանգական գործ. կոմիտէները։

7) Գործ. կոմիտէները ընտրում են գաւառական և նահանգական կոմիսարներ, իսկ Ժամ. Կառավարութեան Անդրկովկասի առանձին կոմիտէն հաստատում է այդ անձանց իրանց պաշտօնում։

8) Անդրկովկասի կոմիտէին կից ծայրերկրային խորհուրդը ժամանակաւորապէս կազմւում է 38 անձերից, հետևեալ բաժանումով. 4-ական հոգի Թիֆլիսի և Բագուի նահանգական կոմիտէներից, 2-ական՝ Անդրկովկասի մնացած 6 նահանգներից և շրջաններից, 1-ական՝ Սուխումի և Զաքաթալայի գաւառաշրջաններից, 3-ական՝ Թիֆլիսի և Բագուի քաղ. կոմիտէներից և 5-ական՝ զինուորների և բանուորական պատգամաւորների կենտրոնական խորհրդից։

---

# ՊՐՈՎՈԿԱՑԻԱՆ ՉԷ ԴԱԴԱՐՈՒՄ

Վերջին ժամանակներս մայրաքաղաքի լրագրներում լոյս են տեսնում ստայօդ լուրեր Կովկասի մասին։

Այս առթիւ Թիֆլիսից ուղարկուեց Նոր Կառավարութեան հետեւեալ հեռագիրը.

«Կովկասի ազգութիւնները ազատուելով հին կառավարութիւնից, որ գրգռում, չարիք ու խռովութիւն էր սերմանում նրանց մէջ, յեղափոխութեան հենց առաջին օրերից միացան։ Ոգեւորուած մի միակ մտածողութեամբ, պահպանելու կռուով ձեռք բերած ազատութիւնները ամեն կերպ աջակցելով Նոր Կառավարութեան, սրտայոյզ, միասիրտ և միաբան և խորապէս գիտակցելով վայրկեանի վեհութիւնը, սկսեցին սերտ միաբանութեամբ աշխատութիւն, նոր իրաւակարգը լայն դեմոկրատիկ սկզբունքներով ամրապնդելու համաձայն մարտի 6-ի հրովարտակի ցուցմունքների։

Բայց ի մեծ վիշտ մեր, ժողովրդական ոգու այս թռիչքը և Բարձրագոյն Կառավարութեան Կովկասի յատուկ Կոմիտէտին կից սկսուած բոլոր ազգութեանց հասարակական գործիչների ստեղծագործական աշխատանքը մերթ ընդ մերթ մթագնում են մամուլի մէջ երեւան եկող չարամիտ և ճշմարտութեան հակառակ լուրերով, որոնք յայտարարում են մեզ ցարդ անյայտ մնացած ժողովրդական յուզմունքների և երկրիս ազգերի սուր յարաբերութիւնների։ Այս լուրերին նայելով իբրև թէ նոյն իսկ պահանջւում է Կովկասում փոխարքայ նշանակել, կամ դիմել զինուորական ուժի և գործակցութեան։

Մենք ստորագրեալներս, մուսուլմանների, հայերի և վրացիների ներկայացուցիչներս, որ աշխատում ենք Անդրկովկասի Յատուկ Կոմիտէին կից, մեր պարտքն ենք համարում վկայելու, որ Կովկասում կարգ ու հանգստութիւն է տիրում, և մութ ոյժերի տարածած ստայօդ լուրերը յուզմունքներ յառաջացնելու նպատակով, չեն խախտելու մեր մէջ հաստատուած այն փոխադարձ վստահութիւնը և համերաշխ գործակցութիւնը, որ կատարւում է ի սէր Մեծ Ռուսաստանի ժողովրդական ազատութեան յաղթանակի։

Հայերից ստորագրել են՝ Ա. Խատիսեան, Մ. Յարութիւնեան, Ա. Ջամալեան, Ա. Սահակեան, Հ. Առաքելեան. Թիւրքերից՝ Ալի-Մարդան բէկ Թոփչիբաշեւ, բժ. Սուլթանով. վրացիներից՝ Գ. Ժուրուլի, Ս. Րցխելաձէ, Գ. Գվազաւա, Ն. Ժորդանիա, Ն. Ռամիշւիլի։

## ԳԱՒԱՌ

*Երեւան.*—Եղել եմ Երեւան 11 տարի առաջ։ Այժմեան Երեւանն անշուշտ առաջադիմել է—փողոցներն աւելի մաքուր են, կայ էլեկտրական լուսաւորութիւն, ձիաքարշ, հիանալի ջուր Դրխբուլաղից (40 աղբիւրներից)։ Երկու բան միայն անփոփոխ են մնացել. նախ Երեւանը մնացել է առաջուայ գաւառական մեծ գիւղաքաղաք. երկրորդ՝ մնացել է հայութեան կենտրոն, ինչպէս որ Հէլսինգֆոր ֆինների մայրաքաղաք։ Ամենուրեք նկատւում է յայտարարութիւններ խանութներում հայերէն և ռուսերէն։ Պետական հիմնարկութիւններում էս կարծես հայերէն լեզուն պարտադիր է...

Այսու պետական հաստատութիւնները կարծես շեշտում են Երեւանի հայկական քաղաք լինելու հանգամանքը։

1828 թ. Պասկեւիչի օրով կարճ միջոցում Երեւանի նահանգը հայոց նահանգ (Армянская область) անուանուեց։

Կարծես, պատմութիւնը միշտ կրկնւում է։ Երբ Շոպենի «Պատմական յիշատակագիր» հայոց գաւառի կարդում ես, երեւում է այն ժամանակուայ և այժմեան նմանութիւն։

Այն ժամանակ էլ պատերազմ էր տաճկի դէմ, և որովհետև պատերազմի բաղդը մեր կողմը չէր, տեղական քիւրդ ղարափափախ ցեղերը գլուխ էին բարձրացրել։

Երեւանի քաղաքային վարչութիւնը շատ լաւ է տանում քաղաքային և պարենաւորման գործերը. Նա մտադիր է խճուղի շինել երկաթուղու կայարանից մինչև քաղաքը, իսկ, երկրորդ, «տամբա» (յենարաններ) շինել ազատելու Երեւանը անցեալ տարուայ հեղեղների կրկնուելուց։

Անցնենք հիմա պատերազմի հետ կապուած հարցերին։ Ասում են թանկութիւն է. փայտի 1 սաժէնը 200 ռ. արժէ։ Մինչև օրս չկարողացան Ղարաքիլիսայում պատրաստ կտրած փայտը բերել տալ Երեւան։ Թէև ներկայումս քիչ դժուար է այդ, բայց ճիշտ է նաև այն, որ մեր հարուստները և առհասարակ մեր ժողովուրդը զուրկ է նախաձեռնութիւնից և հնարագիտութիւնից։

Յայտնի է, որ Երեւանի նահանգում կան քարածուխի հանքեր, բայց ոչ երկրագործական նախարարութիւնն է քաջալերում այդ տեսակ արդիւնաբերական գործեր, ոչ էլ ժողովրդի մէջ է նկատւում նախաձեռնութեան ոգի։

Բացի քարածուխից, Երեւանեան նահանգում կան և «սէլիտրայի», «երկաթի», «ծծումբի» հանքեր, որոնք դեռ եւս շահագործուած չեն։

Թուցէ այդ երեւոյթի պատճառը այն է, որ Երեւանից ընտիր, եռանդոտ գործիչները ցրուել են ուրիշ տեղեր և երկիրը մնացել է զուրկ նախաձեռնող ուժերից։

«Զեմստուոյի» համար էս կարիք կայ ոյժերի, որ դժբաղդաբար շատ սակաւ են։

*Տիգրան Աթաբէգեանց*

— —

*Ախալցխա, 13 փետրուարի*

Յունուարի 22-ին վախճանուեց քաղաքիս ս. Փրկիչ եկեղեցու ծխատէր Գէորգ քահ. Սիսակեանը և 30-ին էլ կատարուեց նրա յուղարկաւորութեան հանդէսը։ Նրա յիշատակին իր ժառանգը՝ Մարտ. Սիսակեանը նուիրեց Ախալցխայի որբանոցին 100 ռ.։ Քաղաքիս քահանաների թիւը այժմ մնացին միայն 6-ը։ Բնականաբար հարց է ծագել մեզանում նոր քահանայացուների ընտրութեան խնդիրը։ Ճիշտ է մեզանում այս րոպէիս զգացւում է երկու կրթուած քահանաների կարիք, որոնք առնուազն ունենան միջնակարգ կրթութիւն, որպէսզի բացի եկեղեցական ծխատարութիւնից ստանձնեն և քաղաքիս հայոց և պետական դպրոցների կրօնի ուսուցչութիւնը և այլ հոգևոր պաշտօններ. այլապէս կարիք չունենք թերուս քահանայացուների ընտրութեան։ Ծէսերի արարողութեանց համար 6 քահանաներն էլ դեռ շատ են։ Այս լուրջ և կարեւոր խնդրի վրայ հրաւիրում եմ մեր սրբազան առաջնորդի ուշադրութիւնը։

— Ախալցխայի որբանոցի վարչութիւնը վերջին օրերս քաղաքում ցրել է իր 1916 թուի յունիսի 1-ից մինչև դեկտեմբերի 31-ի ելումուտքի տպագրուած հաշիւը և ստացուած նուէրների ցուցակը, որից երեւում է, որ որբանոցը յիշեալ 7 ամսին՝ մուտք է ունեցել 16,567 ռ. 70 կ., իսկ ելք՝ 15,935 ռ. 41 կ.։ Որբանոցը, բացի Հայկական Կենտր. Կոմիտէի միջոցով ստացած պետական նպաստից ստացել է տեղացիներից, միայն դրամական նուէրներ՝ 3,857 ռ. 70 կ. մի գումար, որ պատիւ է բերում մեր քաղաքացիներին. կան և բազում իրերի և մթերքների նուէրներ եւս նուիրատուների զգալի մեծամասնութիւնը քաղաքիս ստորին և միջին դասակարգի մարդկանցից և գիւղացիներից են եղել։

Իսկապէս մեզանում ազգասիրութեան և մարդասիրական գործնական քայլեր (և ոչ թէ դատարկ ճոռոմ ֆրազներ) տեսնում ենք քաղաքիս արհեստաւոր և ստորին դասի մէջ և եթէ

կան մի երկու հարուստներ էլ, որ բացառութիւն են կազմում, այդ էլ շատ քիչ է համեմատած նրանց թուին։ Կեցցեն մի բուռն ժողովուրդը, որ իրանց վերջին լումաներով և աշխատանքով ամեն րոպէ աշխատել են. թեթևացնելու իրանց ողբալի ազգայինների և նրանց ցրուած բեկորների թշուառ մնացորդների վշտերը։

— Հինգշաբթի, ամսիս 9-ին, Վարդանանց տօնին, Բաղաքիս Հայ Կանանց Բարեգործ. Ընկերութիւնը, քաղաքային ժողովարանի դահլիճում Ախալցխայի որբերին հիւրասիրելու համար կազմել էր հանդէս։ Տեղի ունեցան աշակերտական ներկայացում, երաժշտութիւն, երգեր, պարեր։ Որբերին հիւրասիրեցին թէյով, քաղցրեղէնով, մրգերով և այլն։ Այս էլ երկրորդ անգամն է, որ նոյն ընկերութիւնը որբերի համար ուրախացնող հանդէսներ է կազմակերպում։ Իսկապէս կանանց այդ ընկերութիւնը որբերի խնամակալութեան գործում զգալի և օգտակար օժանդակութիւն է ցոյց տալիս Որբախնամ Վարչութեանը։ Թ.

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿ.

Կ. Հ. Բ. Ընկերութիւնը շնորհակալութեամբ ստացաւ օր. Զարուհի Մութաֆեանից յօգուտ Ընկերութեան ճաշարանի ի յիշատակ հանգուցեալ Աստղիկ Ղազաղեանի մի պարկ 5 պուդ 3 և կէս ֆ. բրինձ։

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.

1. Օլգա Վարդպատրիկեանից յօգուտ չքաւորների 10 ռ.։

2. Շերմազանեան ընտանիքից ի յիշատակ հանգ. Վասիլ Վարգանեան Շերմազանեանի հոգեհացի փոխարէն յօգուտ ճաշարանի 100 ռ.։

3. Օրիորդ Կ. Պօղոսեանից յօգուտ չքաւորների 15 ռ.։

4. Միքայէլ Յովս. Արամեանից դպրոցական նպաստ 900 ռ.։

5. Թիֆլիսի Փոխատ. Վարկի Ընկ. ծառայողներից յօգուտ փախստականների 14 ռ. 75 կ.։

### ՀԱՅԿ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷ

29-ն մարտի կայացաւ Հ. Կ. Կ. նիստը, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր եղան հետևեալ որոշումները.

Ա.—Գանձակի Կոմիտէի որբանոցներին կից հիմնել բանջարանոց և չուստանոց, յատկացնելով 600 ռ.։

Բ.—Տաճկահայ գաղթ. 4 մտաւորական ընտանիքների միանուագ նպաստ տալ, որպէս օժանդակութիւն։

Գ.—Խնուս-Մուշի լիազօր պ. Կարօ-Սասունին տուեց մի համառօտ զեկուցում իր շրջանի մասին ընդհանրապէս՝ կանգ առնելով որբանոցի վրայ, ուր ներկայիս կան 100 որբ, որոնց թիւը հետզհետէ աւելանում է։ Որբանոցը տեղաւորուած է երկու տեղում՝ Հարեմիկ գիւղում և Խնուսում. կան նաև գաղթ. դպրոցներ։

Մուշում գործում է մի սննդատու կայան գաղթականութեան համար։

Որոշեց փոխադրել Խնուս մարտ և ապրիլ ամիսների նպաստը՝ 10,500 ռ., իսկ գաղթ. վերաբերեալ այլ և այլ հարցերի համար հրաւիրել մօտիկ օրերում մի արտակարգ ժողով, լուծելու նաև պարենաւորման մի շարք հարցեր։

### ՃԻՒՂԵՐ

Կարսի Կ. Հ. Բ. Ը-թեան կից գաղթականական դպրոցների յանձնախումբը մարտի 12-ին կազմակերպած երեկոյթից ստացաւ զուտ արդիւնք մօտ 1000 ռուբլի։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Մարտի 15—28-ը

Ալիւր ուղարկուած է Ալէքսանդրապօլ 5 վագոն, Սարիղամիշ՝ 3, Գանձակ՝ 3, Ղարաչինար՝ 2, Անենեօ՝ 3, Բարվանսարա՝ 2, Դիլիջան՝ 2, Ալաշկերտ՝ 1, Ղարաքիլիսա՝ 1, Նոր-Բայազէդ՝ 2, Ղարանլուղ՝ 1 և Ելենովկա՝ 1, ընդամենը 26 վագոն։

Գարի ուղարկուած և Իգդիր և Սարիղամիշ մէկական վագոն։

Միսեղ ուղարկուած է Կարսի, Խնուսի և Բասենի պահեստների համար 1 վ. և Վաղարշապատ՝ 1.

Ցորեն ուղարկուած է Սարիղամիշ 1 վ.։

Շաքար ուղարկուած է Դիլիջանի և Բարվանսարայի որբանոցների համար 153 պուդ 26 ֆ.։

Նոր գնումներ. գնուած է Փոթիում 3 վ. կորեկ և Հիւսիսային Կովկասում 15 վ. ցորեն։

Մարտի 21-ին կայացաւ պարենաւորման մասնաճիւղի արտակարգ նիստը։ Ժողովը լսելով Վանի լիազօր Գ. Օհանջանեանի մանրամասն զեկուցումը Պարսկաստանում ցորեն գնելու առթիւ, որոշեց. ի նկատի ունենալով, որ ներկայումս միմիայն Հիւսիսային Կովկասում գնումներ անելով հնարաւոր չէ պահեստներին մթերքներ մատակարարելու, Թաւրիզի, Մարանդի և Մարաղայի շրջաններում գնել 100,000 պուդ ցորեն, որը և փոխադրել Վանի շրջանը, և ի նկատի ունենալով, որ փոխադրութիւնը ահագին ծախս է պահանջում և չի կարելի ամբողջ ծախսը աւելացնել ցորենի արժէքին, որովհետև գաղթականութեան համար չափազանց զգալի կը լինի ցորենի արժէքը, հետևապէս ցորենը Վանում ծախել 7 ռուբլով, իսկ մնացած ծախսը, մօտաւորապէս 5 ռ. իւրաքանչիւր պուդին հոգալ ուրիշ միջոցներից։ Բացի այդ որոշուեց երկու վագոն շաքար փոխադրել Պարսկաստանի և Վանի գաղթականութեան պէտքերի համար։

---

## Քրօնիկօն

---

Զատկական տօների պատճառով «Համբաւաբերի» հետևեալ համարը լոյս է տեսնելու ապրիլի 16-ին։

Հայ կանանց ժողովը Կիրակի, մարտի 26-ին, քաղաքային դումայի դահլիճում տեղի ունեցաւ Հայ Կանանց ժողով՝ նախագահութեամբ իշխան. Մ. Թումանեանի։

Նախագահը ժողովականներին ծանօթացնելով կատարուած յեղափոխութեանը, առաջարկեց ողջոյնի հեռագիր ուղարկել Նոր Կառավարութեան, որն և ընդունուեց։

Այնուհետև տիկ. Ս. Դանիէլ-բէկը խօսեց կանանց հարցի մասին։

Խօսեցին նաև տիկ. Սահակեան, տիկ. Թադէոսեան, օր. Արմ. Տիգրանեան և ուրիշներ։

Մարտի 29 ին կայացած երկրորդ ժողովում ընտրուեց մի կենտր. մարմին՝ կանանց հարցը առաջ տանելու համար։

— Մարտի 29-ից սկսեալ «Հորիզոնը» անցաւ ամբողջովին Հ. Յ. Դաշնակցութեան ձեռքը՝ Ա. Շահխաթունեանի և Ս. Վրացեանի խմբագրութեամբ։

— Անդրկովկասի կոմիսարներ՝ Մ. Պապաջանեանի, Ջափարովի և Կ. Աբաշիձէի հրաւէրով հայերի, վրացիների և թուրքերի ներկայացուցիչներից կազմուած է յատուկ խորհրդակցութիւն, որն զբաղուելու է Անդրկովկասի շրջանային կառավարական կազմակերպութեան խնդրով։ Խորհրդակցութեանը հաւասար չափով ներկայացուցիչներ ունին երեք ազգերն էլ։ Խորհրդակցութեան մէջ մտնում են հայերից՝ Ալ. Խատիսեան, Արշակ Ջամա-

լեան, Ս. Յարութիւնեան, Ռոստոմ, Հ. Առաքելեան, Ա. Բաբեան, Ա. Երզնկեան. վրացիներից՝ Ն. Ժորդանիա, Ն. Ռամիշուիլի, Ժուրուլի, Գվազաւա և ուրիշներ. Թուրքերից՝ Թոփչիբաշև, Սուլթանով, Խան-Խոյսկի և ուրիշներ։ Խորհրդակցութիւնն ունեցել է մի քանի նիստ և քննութեան առել գաւառային, շրջանային կառավարական կազմերի խնդիրը։

— Նահանգական պարէնաւորման կոմիսարը մի կոչով առաջարկել է վաճառականներին երկու օրուայ մէջ կոմիտէին յայտնել իրենց ունեցած մթերքների պաշարի քանակի մասին, հակառակ դէպքում, խուզարկութիւնից յետոյ գտնուած մթերքները կենթարկուեն գրաւման։

# Արտաքին տեսութիւն

## Տաճկահայեր

*Միջագետքի անգլիական բանակի հրամանատար Մոդը հեռագրով հաղորդում է, որ Բաղդադում գտնուած հայերը անվտանգ են և կարօտ նիւթական լուրջ օժանդակութեան.*

---

### ԱՍԻԱՅԻ ՔՐԻՍՏՈՆԵԱՆՆԵՐԸ

«Journal de Genève» լրագրի յուն. 18-ի թուին մէջ այս վերնագրին տակ հրատարակուած է հետեւեալ խմբագրական յօդուածը որ C. W. ստորագրութիւնը կը կրէ.

«Մեծ պատերազմէն քաշքշուած և ջախջախուած շատ մը պզտիկ ժողովուրդներին մէջ հայերը ամենէն աւելի խղճալին են. չկայ ուրիշ մը որի վիճակը աւելի սոսկալի եղած լինի։ Անոնց դժբաղդութիւնը կը սկսի շատ տարիներ առաջ, կը տեւէ միշտ, և միշտ աւելի սարսափելի եղած է։ 25 տարիներէ ի վեր կը կոտորեն հայերը, ինչպէս կանոնաւոր ժամանակների մէջ կորսան կենդանիները։

Պատերազմը այս մշտնջենական կոտորածը սարսափելի համեմատութիւններ հասցուց. ընդհանուր ջարդ մ՚է այս որ բնաջնջումի կը ձգտի։ Բայց այսքան լայնածաւալ երկրամասերի մէջ տարածուած ժողովուրդ մը չբնաջնջուիր։ Երիտասարդ-Թիւրք կառավարութեան կողմէ կազմակերպուած կանոնաւոր սպանութիւններին հակառակ, միշտ հայեր կը մնան, որոնց ցաւի աղաղակները այլևս անլսելի լինելու վտանգին տակ կը գտնուին։ Այնքան վայրագութիւնների երկարաձիգ տեսարանը մեզի աւելի մօտ գործուած սարսափները, և այն դիւցազնութիւններ, որոնք մեր աչքերի առջև կը կատարուին և կը յուզեն մեզ խիստ մօտէն, կրնան վերջապէս մոռցնել տալ այս դժբաղդները որոնք Քրիստոսին հաւատալու և տանջանքների մէջ իսկ իրենց այդ հաւատքը յայտարարելու ոճիրը գործած են միայն։

Դաշնակիցներէն Տ. Վիլսոնին ուղղուած ծանուցագիրը չյիշատակեր հայերը *), սակայն Բառեակ Համաձայնութեան պատերազմի նպատակներին մէջ կը նշանակէ օսմանեան լուծին ենթարկուած ժողովուրդների ազատագրումը և Թիւրքերի Եւրոպայէն արտաքսումը։

Մեծ պետութիւնները 1878-ին Հայաստանի համար յանձնառութիւններ ստանձնեցին, որ չկատարեցին սակայն։ 1894-էն 1896 Աբտիւլ Համիտի կոտորածները տեղի ունեցան մինչև Կ. Պոլսի փողոցներին մէջ, դեսպանատուններին պատուհաններին ներքև։ Ոսկեղջիւրի առջև գրահաւորներ կային։ Բայց ոչ ոք մատը չբարձրացուց ոճիրը դադրեցնելու համար։ Մէկ քանի օտար դիւանագէտների յարգալից դիտողութիւնները ապարդիւն մնացին։

1913-ի պատերազմէն վերջ Ռուսիան ծրագիր մը կազմեց՝ որ հայերի պաշտպանութեան և հովանաւորութեան համար մէկ քանի միջոցներ կը պարունակէր։ Այդ ծրագիրը ընդունուեցաւ Թիւրք կառավարութենէն։ Բայց պատերազմը եկաւ ջնջել բոլոր այն յոյսերը, որ այս բարենորոգման վրայ կը հիմնուէին։ Էնվէր փաշան, այս պզտիկ մարդը, որի կանոնաւոր և նուրբ դիմագիծերը կը յիշեցնեն Դուլոնեան ժամանակի Նաբոլէնինը, միտքը դրած է մաքրել օսմանեան կայսրութիւնը բոլոր ոչ-Թիւրք տարրերէն։ Այսպէս կը կարծէ գործադրել Երիտասարդ-Թիւրքերի յեղափոխութեան անուանի յայտագիրը, որ կը բովանդակուի այս երկու բառերի մէջ. Միութիւն և Յառաջադիմութիւն։ Սիրիան ալ իր յաջորդական կարգն ունեցաւ։ Այնտեղ՝ ալ ժողովուրդը կը ջնջուի այժմ կազմակերպուած սովով և սպանութիւններով։ «Ոչ մէկ դարման, կը գրէին քիչ առաջ «Նուվէլ կազէտ տը Զիւրիխ»-ի մէջ, պիտի կրնայ այսուհետև դադրեցնել այս դժբաղդ երկրի հոգեվարքը»։

Հայաստանի և Փոքր Ասիա ցրուած հայերի վիճակին վրայ տեղեկութիւններ ունին արդէն մեր ընթերցողներ։ Այն մանրամասնութիւններ, որ իրենց աչքի առջև պարզած են ամիսներէ ի վեր, մեզ հաղորդուած են այն տեղերէն եկած Սուիսներէ կամ արտագրուած են գերմանացիների պատմածներէ և մասնաւորապէս Պալի մէջ հրատարակուած գրքոյկէ մը *), որ գրուած է գերմանացիէ մը, Հալէպի գերմանական դպրոցի ուսուցչապետ տքդ. Նիբաժէն։ Մենք մէկ կողմ թողած ենք Թիւրքիայի դէմ պատերազմի մէջ գտնուող երկիրներէն հասած վկայութիւնները։

Յայտնի է, որ Թիւրք կառավարութիւնը Տ. Ֆոն Պիսինկէն առաջ երևակայած է խմբովին տարագրութիւնը։ Ամբողջ ժողովուրդներ կը վտարուին, ոչ թէ բռնի աշխատանքի դատապարտելու, այլ անապատներին մէջ մեռցնելու համար։ Վտարման այս յանձնախումբերէ մէկին նախագահը ինքն իսկ ըսած է տքդ. Նիբաժին, որ բացառութիւն մը կը խնդրէր ի նպաստ 4 հայ մանուկների. «Ձէք հասկնար ուրեմն մեր դիտաւորութիւնները։ Կուզենք ջնջել հայ անունը։ Ինչպէս Գերմանիան՝ միայն գերմանների գոյութիւնը կուզէ, մենք թիւրքերս ալ միայն թիւրքեր կուզենք»։ Նոյն գերմանացին չէ ուզած համոզուիլ այսպիսի դատողութեան մը։ Բայց այն գաղափարը—որ անտարակոյս անտանելի և ցաւագին է ամեն քրիստոնեայ գերմանացիի համար—թէ Պեռլինի կառավարութիւնը կը քաջալերէ այս կոտորածները, տարածուած է ամբողջ Փոքր-Ասիայի մէջ։ Թիւրք մոլլաներ մզկիթներին մէջ կը յայտարարեն այդ և զինուորներ (gendarme) այսպէս կը բացատրեն ցաւալի թափօրներին առջև յուզուող բարի և կարեկից թիւրքերին «Թա'ալիմ էլ ալ ըման»—գերմանների սորվեցուցածն է այս։

Յոյսը չմեռնիր երբեք մարդու սրտին մէջ։ Օսմանեան կայսրութենէն դուրս ապաստանած հայերը է անոնք, որ տակաւին կապրին այնտեղ սարսափի մէջ, կը յուսան միշտ։ Անոնք չեն ուզեր ռուս դառնալ։ Կուզեն ապրիլ միայն իրենց կրօնքին մէջ, և իրենց աւանդութիւնների յարգուիլը կը խնդրեն։ Պէտք չէ որ անոնք մոռցուին մեծ հաշուեյարդարութեան ժամին։

Ամբողջ Եւրոպան յանցաւոր է Աբտիւլ-Համիտի ոճրին համար։ Երբ մեր ժամանակի բարոյական պատմութիւնը գրուի, պիտի տեսնուի, որ այդ եղաւ եւրոպական անիշխանութեան

---

*) Հայերի կոտորածները յիշատակուած են։ Խմբ. Արմ.

*) Material sur Beurtellung des Schicksals der Armenia in Jahre 1916—16.

սկզբնաւորութիւնը։ Բայց այն սարսափներ որ կը գործադրուին այս ժամիս, և աւելի քան երկու տարիէ ի վեր, առանց սոսկալի պատասխանատուութիւնը կիյնայ Գերմանիայի վրայ միայնակ. Թա՛ղլիմ էլ ալ ըման...

Երբ քրիստոնեաների Աստուծոյն անունը կը խառնեն բոլոր կայսերական յայտարարութիւններին և նոյն իսկ պատերազմական զեկոյցներին մէջ, կը կարծենք թէ իրենց համար նուիրական պարտք մը պիտի լինէր մարդասպանութեան, բռնաբարութեան և չարչարանքի դէմ պաշտպանել անոնք որ կը պաշտեն այդ Աստուածը և գիտեն նաև մեռնիլ անոր համար»։

(«Արմէնիա» № 27)

# Գրականութիւն

## ՃՇՄԱՐԻՏ ԲԱՐԵՊԱՇՏԸ

Երկրաւոր անչափ վայելչութիւններ քաշած մի մարդ անհոգ զբօսնում էր դաշտերում. գոյն-գոյն ծաղիկների միջով անցնելով հասաւ մի ձորաբերան, ուր շքեղ պճնուած շուշանների մօտ դայլայլում էին սոխակները։ Նա հիացած երկար նայելուց ետ խօսեց ինքն իրան.

— Ա՛յ մարդ, բաւական էր, ո՛րքան մարմնիդ կամքը կատարելով զբաղուեցիր, այժմ էլ մտածիր հոգուդ փրկութեան վրայ։ Այս ծաղկները իրանց գեղեցիկ տեսքով, այս երգեցիկ թռչուններն իրանց սրտագրաւ ծլվլոցով անդադար օրհնում փառաբանում են Արարչին ու իրանց երախտագիտութիւնը ցոյց տալիս նրան. ես, իբրև բանական արարած, միթէ նրանցից պակաս եմ, իմ երգով ու աղօթքով աւելի լաւ կարող եմ փառաբանել Արարչի վեհութիւնը ու նրա յայտնութեան արժանանալ։

Այսպէս մտածելով մարդը թողեց աշխարհային վայելքները, հեռանալով բնակութիւնից, քաշուեց այդ ձորաբերանը, որ այնտեղ ճգնելով հոգու ճանապարհը գտնի։ Ծնկաչոք աղօթում ու երգում էր և անսուաղ կեանք անցկացնելով, աչքերը երկինք գցած, յայտնութեան սպասում։ Բարեպաշտ աղօթաւորը երկար սպասելուց ետ յանկարծ մի ձայն լսեց վերևից.

— Ա՛յ հողածին, բաւական էր, ո՛րքան ճգնեցիր անապատում աղօթելով ու երկնքին նայելով, այժմ էլ մօտիդ արեկող լանջին նայիր։

Աղօթաւորը թեքուեց այն կողմը և տեսաւ մի մրջնաբոյն նայեց ներս, կեանքն ու շարժողութիւնը եռում էր. հազարաւոր մրջիւններ դժվժում էին յետ ու առաջ. նրանցից ոմանք այնպիսի բեռներ էին կրում, որ մի քանի անգամ իրանցից մեծ էին. ոմանք ծնօտների մէջ ամուր սղմած տանում էին բոյսերի հատիկներ, հունդեր, ոմանք կրում էին ցեխի կտորներ ու կարկատում բնի փլեկ տեղը, ոմանք ձմեռուայ պաշարն էին տեղաւորում կամ ներսի ծիլերը քաղհան տալիս, որ բնի մէջ խոտ չըբսնի։ Ուրիշները բնից վերցրած դուրս էին տանում մեռած մրջիւնին, Ել ու մուտ անելիս նրանք իրար չէին խանգարում. դուրս եկողը քաղաքավարի կերպով կողքի էր կանգնում, որ ներս մտնողը կարենայ անցնել։ Եթէ մէկը չէր կարում իրա վերցրած բեռը տանել կամ ուժ չունէր թումբը բարձրանալու, նրան օգնութեան էին հասնում ուրիշները։

Ճգնաւորը զմայլուած նայում էր հետաքրքրական տեսարանին և դեռ երկար կը նայէր, եթէ երկնային ձայնը նրան չսթափեցնէր.

— Ա՛յ հողածին, մինչև հիմա քեզ օրինակ էիր բռնել ծաղիկներն ու թռչունները ու ժամանակդ սպանում երգով ու աղօթքով, ժիր և իմաստուն մրջիւնների գործունէութիւնը դիտելուց ետ ի՞նչ մտքի եկար. դարձեա՛լ սպասում ես յայտնութեան։

Ճգնաւորը գլուխը գետնից բարձրացնելով տեսաւ մի ծերունի, ձիւնափայլ միրուքով, իրա դիմաց կանգնած։ Ծերունին դէմքը խոժոռելով ասեց նրան.

— Ողորմելի մարդ, ի՞նչ ես անշարժ, անգործ վէր ընկել անապատում, հոգուդ փրկութի՞ւն ես կամենում, երկնքին մի՞ ձանձրացնի անտեղի աղօթքներով, դարձիր աշխարհ, քարոզիր մարդկանց հոգեշահ բաներ և յորդորելով յետ պահիր անվայել բաներից. մոլորուածին ցոյց տուր ուղիղ ճանապարհը, բռնիր կոյր մարդու բազուկը, որ չընկնի խորխորատի մէջ, հաշտեցրու երկու հոգու, հեռացնելով նրանց միջից անախորժութեան պատճառը։ Եթէ օտար մարդկանց չես ուզում օգնել, մի՞թէ չունես ծերունի հայր կամ պառաւ մայր, վշտահար ազգական, բարեկամ, գնա նրանց պահպանիր, սրտերը մխիթարիր։ Կամ մի՞թէ ձեր հարևանութեան մէջ չկան խեղճ, աղքատ կանայք, երեխաներ, գնա նրանց ձեռ մեկնիր, նրանց ճանապարհի վրայ թափուած քարն ու փուշը հեռացրու, լքուելուց ազատիր. ճշմարիտ բարեպաշտութիւնը այդ է։ Դու երկնքից չես ընկել, իբրև հասարակ հողածին ոչ միայն կապուած ես աշխարհի մարդկանց հետ, այլ շատ կողմերով պարտական ես նրանց։ Դարձիր աշխարհ, երևի այնտեղ գտնուի մի արժանաւորը, որին կը կամենայիր ծառայութիւն մատուցանելով թեթևացնել նրան բաժին ընկած ծանր բեռը։ Բաւական էր, ո՛րքան անձնամոլութեամբ պարապեցիր, հետևիր այս իմաստուն միջատների օրինակին, որոնք մասնաւոր սեպհականութեան մասին գաղափար չունեն—այստեղ իւրաքանչիւրը աշխատում է բոլորի համար ու բոլորն ապահով են ապրուստի կողմից։

Ճգնաւորը գլխակախ լսում էր այս խօսքերը ու ինքն իրան ամաչում։ Աչքերը երբ բարձրացրեց, ծերունին այլ ևս չկար։ Ինքն էլ սակայն առաջուայ մարդը չէր, նրա մտքի դռները բացուել, հոգին լուսաւորուել էր. անապատը թողնելով դարձաւ նորից աշխարհ, մարդկանց շրջանը։ Բայց այս անգամ, անձնական վայելչութիւնը մի կողմ թողած, սկսեց մեծ եռանդով աշխատել բոլոր մարդկանց համար։ Տարած աշխարհը նրան այժմ թւում էր մի ահագին մրջնաբոյն, ուր ամենը պարտական են ապրելու տքնել ընդհանուր գործի համար։ Կանոն ընդունելով «ամենը մէկի համար, մէկը ամենի համար»-ը, նա անխտիր օգնում էր ամենքին, ինչքան ուժը պատում էր։

Բ. Ս.

# Մատենախօսութիւն

## ՎԱՆՑԻ-ՔԻՒՉԱՔ

### Ա.

Իր սիրային գողտրիկ երգերով յայտնի Նահապետ Քուչաքը ժողովրդին յայտնի է Վանցի-Քուչաք անունով։

Քուչաք թուրքական քիւչիւք *) բառն է. և ժողովրդի ասելով տրուած է Նահապետին այն պատճառով, որ նա շատ վաղ, մանկական հասակից է սկսել երգել։

Եւ որովհետև այս նշանաւոր երգչի մասին պակաս են կենսագրական ծանօթութիւններ, մենք այս տողերով փորձում ենք

*) Քուչաք (այժմ քիւչիւք) ինչպէս որ կը գրուի, այնպէս չի կարդացուիր թրքերէնի ներկայ օրէնքով. ըստ այնմ՝ երբ մի բառի առաջին վանկը էօթրէով է (ու), երկրորդ վանկն ևս պէտք է ենթարկուի նոյն հնչման, չնայելով որ երկրորդ վանկը իւոթիւնով (ա է) հնչուելիս է եղել հնումը։

տալ այն ազգագրական զրոյցներն ու պատմութիւնները, որոնք կենդանի են տակաւին ժողովրդի յիշողութեան մէջ։

Այս զրոյցներն երկու փոփոխակներով (վարիանտներով) կը ներկայացուեն. ըստ առաջինին՝ պատանի Քուչաքը *) հրաւիրւում է կնքաւոր լինելու. ժամանակի սովորութեան համաձայն կնքահաշի սեղանին իւրաքանչիւր մասնակցողը պարտաւոր էր մի երգ երգել. իր հերթին Քուչաքը մնում է մէջը, ամօթից կարմրում է, սեղանից հրաժարուելով գնում է տուն և տրտմութեամբ քուն մտնում։ Տիրամայրը խղճում է վշտահար կնքաւորի վրայ, երազում երևում է նրան և խոստանում հրեշտակային աննման ձայն և երգելու գերազանց շնորհք **)։

Ըստ երկրորդի, որ արդէն հէքեաթային է բոլորովին և Ղարամ-Նեշերվան անունով մի անձի համար եա պատմւում է. Քուչաքն իր այգին բրելիս տեսնում է մի գեղեցիկ օձ, որ մօտակայ ծովից դուրս է ելնում, ծակի բոլորը խաղում և անցնում գնում։ Մի քանի րոպէ յետոյ ուրիշ նոյնանման մի օձ գլուխը ծակից դուրս է հանում, չորս կողմը դգտում և ամբողջ ուժը հաւաքած՝ այնպէս է թռչում որ առանց խաղն աւրելու մի կողմը կտրտւում և սպասում է ինչ որ մէկի այցելութեան։ Արդարև գալիս է մի գարշելի սև օձ և փաթաթւում են մէկմէկի։ Քուչաքն այլևս չի կարող համբերել, բահի մի հարուածով վիրաւորում է չէկ օձին, իսկ սևը փախչում ազատւում

Կէս գիշերին երկու խորհրդաւոր անձեր կանգնում են Քուչաքի առջև և գրեթէ բռնի նրան տանից դուրս են հանում յայտնելով, որ իրենք «Քաջանց Թագաւորի» պատուիրակներն են և եկել են իրան տանելու նրա հրամանով։ Ճանապարհին ստորերկրեայ մի պալատ է բացւում Քուչաքի առաջ. նա ներկայանում է արքայական գահի վրայ բազմած Քաջանց Թագաւորին. պատմում է իր տեսածն ու արածը։ Այդ վկայութեամբ հաստատւում է, որ Թագուհին դաւաճանել է իր Թագակցի սէրը. չարագործը պատժւում է, իսկ վարձատրութեան ընտրութիւնը Թողնւում է իրան Քուչաքին, որ, ինչպէս Թելադրած էին պատուիրակները ճանապարհին, խնդրում է, որ Թագաւորն իր ճկոյթ մատը դնէ իր բերանը։ Խնդիրը կատարւում է և այդ րոպէից սկսած՝ բնութեան մէջ Քուչաքի համար գաղտնիք չի մնում, Թռչունների և կենդանիների լեզուները իրան հասկանալի են և բոյսերի ու ծաղիկների զօրութիւնը՝ իմանալի։ Բացի այդ տրւում է իրան հրաշալի ձայն և բանաստեղծի ստեղծագործող միտք և հանճար, ինչպէս նաև մի բոզ-եզ (ճերմակ եզ) որ, ըստ ժողովրդի, եռտանի է եղել, այսինքն, առաջակողմի միակ ոտքը կրծքի վրայ է եղել և այդ տարօրինակ եզը արաբական նժոյգից աւելի սրընթաց է լինում։

Քուչաքն, ասում է ժողովուրդը, իր ամբողջ կեանքի մէջ այդ եզնով էր ման գալիս և Պարսկաստանից Կ. Պոլիս երեք օրուայ մէջ է գնացել։

Քուչաքի «շնորհացուութիւնը» ժողովուրդն այսպէս բացատրելուց յետոյ, պէտք է ասել, որ նա երկու տեսակ աշըղ է ընդունում. հախ-աշըղներ, որոնց շնորհքն ու տաղանդը տուածուրեկ է (երկնատուր) և հասարակ աշըղ։ Քուչաքն առաջիններից է։

Քուչաքի հռչակն հասնում է մինչև Իրան ու Թուրան, հրաւիրւում է Շահի պալատը, ուր երկար մնում և հիացնում է արքունիքն իր աստուածային ձայնովն ու երգովը. Նա ազատ ել ու մուտք է ունենում նոյն իսկ Շահի հարէմում երգելու համար։ Բայց վերջն ամբաստանւում է իբրև մի նոր «Պարիս ընդ մենելաւոսեան Հեղինէի», և իր կեանքն ազատում է դարձեալ երգով։ Այդ երգովը նա զրպարտութիւն է համարում իր մասին եղած ամբաստանութիւնը և իւրաքանչիւր տողը վերջացնում է «կէօրգիւյին էօրթ, կէօրմետեյին սէօյլէմէ) *) բառերով։ Վերջապէս ազատուելով վերադառնում է հայրենիքը և այնտեղից հրաւիրւում է Ստամբոլ տաճկաց Սուլթանի արքունիքը։ Սուլթանը նրա իմաստութիւնը հետևեալ կերպով է փորձում.

Առաջարկում է նրան (իբր հանելուկ մուամմա) գիտնալ Թէ ինչ է պահուած իր սենեակի դարակին մէջ։ Քուչաքը՝ սազը ձեռքին սկսում է քննել երկինքն ու երկիրը.

«Ելայ երկինք և աստղերը ես համրեցի մի առ մի,
բոլորը զոյգ-զոյգ էին.
Իջայ երկիր և կենդանիք ես համրեցի մի առ մի
բոլորը զոյգ-զոյգ էին.
Ծովեր մտայ խորասուզուել ովկեանի անդունդները,
Համրեցի ու զուգեցի ձկներն ու գեռուններ,
Միայն մէկ հատ ձուկ տեսայ, որ միայնակ էր կեցած,
Իսկ ընկեր նրա՝ անա այստեղ բանտարկուած»։

Դարակում պահուածը ձուկ է լինում... Սուլթանն սքանչանում է Քուչաքի իմաստութեան վրայ և մեծամեծ պարգևներով մեծարում նրան։

Ս. Մովսէսեան

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

«Մշակ» լրագրի № 56-ում «Մեսրոպ եպիսկոպոսը Սամարղանդում» Թղթակցութեան կցուած է հետևեալ խմբագրական ծանօթութիւնը.

«Մեսրոպ եպ. երբ Թիֆլիսի առաջնորդ էր, ոչ մի անգամ, ոչ մի Թերթում չյայտարարեց իր ստացած գումարների մասին և ոչ այն մասին, Թէ ստացած գումարները ում է յանձնել և որքան»։

Հ. Կենտր. Կոմիտէն հարկ է համարում յայտնել.

Մեսրոպ եպ. գաղթականութեան կարիքների համար ստացած բոլոր գումարները № № 2 և 3 անդորրագրերով յանձնել է Կոմիտէիս գանձապահ պ. Գ. Ծուրինեանցին. ինչ վերաբերում է ծախսուած գումարներին, Մեսրոպ սրբազանը ներկայացրել է մանրամասն հաշիւ իր բոլոր փաստաԹղԹերով, որը և քննուել է Կոմիտէիս վերաստուգիչ յանձնաժողովի կողմից և ընդունուել։

Այդ հաշիւը Կոմիտէիս ընդհանուր տեղեկագրի մէջ, այս քանի օրս լոյս կը տեսնի։

Հայկ. Կենտր. Կոմիտէ

# ՏԵՂԵԿԱՏՈՒ

Ախալխալաք գիւղի հայոց ծխական դպրոցի հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ստացել է իր խնամքին յանձնուած դպրոցի օգտին՝

Պ. Ա. Նազարեանից 100 ռ., պ. Տ. Շադինեանից իր մօր Նատալիայի յիշատակին 25 ռ., տիկ. Միսկինեանից իր մօր՝ Աննայի և եղբօր՝ Յովհան. յիշատ. 20 ռ., պ. Մ. Մելիքեանից իր դստեր՝ ՍաԹենիկի յիշատակին 10 ռ., վրացազգի Օքրոյեի յիշատ. 5 ռ.։

Յար. քահ. Միրիմանեան

*) Նահապետ անունն անծանօթ է ժողովրդին։

**) Ժողովուրդն աւանդում է, որ երգիչն ունէր և աննման գեղեցկութիւն։

*) «Ծածկիր, ինչ որ տեսար, և մի ասիր, ինչ որ տեսած չես». դժբախտաբար այդ երգն իմացող հայրենակիցներուս հեռաւորութեան պատճառաւ չկարողացանք գրի առնել. Թէև հայրենիքում Վանցի-Քուչաքի մի քանի երգերի հաւաքածուն ունէինք։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

*Տպարան Ն. Աղանեանի* Тип. Н. Аганьянца, Полицейская 7.